

1917 № 4 Յունուարի 29 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաշարեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պատի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։ Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։


## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.

Երկրորդ տարի **ՀԱՄԲԱՒԱԲԵՐ** Երկրորդ տարի

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան

Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ.: Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.: Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արտաշարեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։

Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՆՈՐ ՍԱՐՍԱՓՆԵՐԻ ՆԱԽՕՐԵԱԿԻՆ

Համաշխարհային չարիքի հանճարը՝ Գերմանիայի Վիլհելմ կայզրը շարունակում է աւելի խորը մխել իր ձեռքերը մարդկային արիւնի մէջ. Նա, կարծես, ձգտում է ամբողջ տիեզերքը դարձնել մարդկային սպանդանոց։ Նրա ամեն մի գործողութիւնը, ամեն մի քայլը ստեղծում է նոր մարդկային զոհերգամններ։

Պատմութեան մէջ չի կարելի գտնել մի պատերազմ, որը նոյնիսկ հեռաւոր նմանողութիւն ունենար ներկայ պատերազմի հետ. սա եզակի է թէ իւր հսկայական չափերով և թէ իւր անհելի հետեւանքներով։

Աղճի թելադրանքներ, մարդկային բանականութեան օրէնքներ անտես են արուած. գործադրւում է ամեն տեսակ և ամենանրբշաւոր ու ոչ-մարդկային միջոցներ։

Կարելի էր ենթադրել, որ կռուող թշնամին գործ կը դնի իւր հակառակորդի դէմ նոր հնարած հեղձուցիչ

գազ, որից բոպէապէս պատերազմի դաշտը ծածկուէր մի ամբողջ զօրամասի դիակներով։

Կարելի՞ էր ենթադրել, որ թշնամին կարող է ուղղել խողովակով իւր հակառակորդի դէմ հրեղէն բոց, որից հակառակորդը վայրկենաբար այրուէր և անճանաչանար։

Այս հրէշաւոր միջոցներին դիմեց Գերմանիան, որի դէմ բողոքեց մարդկային խիղճը։ Սակայն բողոքը չազդեց ոչ Գերմանիայի, ոչ էլ նրա իդէալացրած կայզրի՝ ժամանակակից այդ Ներոնի վրայ, որը իւր ժողովրդի և իւր դաշնակիցների աչքին ստացել է դիւթական ոյժ, որ կամազուրկ է արել նրանց և որը քաշում է նրանց իւր յետևից՝ նորանոր դժոխային ծրագրեր իրագործելու։

Երբ ամեն կողմից բարձրացան արդարացի բողոքներ, որ Գերմանիան պատերազմական միջոցների մէջ խտրութիւն չէ դնում. որ նա չէ տարբերում կռուող զօրքը խաղաղ ժողովուրդից, չէ տարբերում կռուող պետութիւնը չէզոքից, ոտնահար է անում միջազգային օրէնքը, որի մշակմանը Գերմանիան ունեցել է եռանդուն մասնակցութիւն իւր գիտնական ներկայացուցիչների միջոցով զանազան ժամանակներում տեղի ունեցած միջազգային համաժողովներում, ի դէմս Գերմանիայի Վիլհելմ կայզրը սառնասրտութեամբ պատասխանում է. «պատերազմն ունի իր օրէնքները»։

Իսկ երբ փորձում էք պարզել, թէ նա ինչպէս է հասկանում այդ խօսքը, գալիս էք այն եզրակացութեան, որ ըստ Վիլհելմ կայզրի՝ պատերազմը օրէնք չունի, պատերազմի ժամանակ թոյլատրելի է ամեն բան, միայն թէ միջոցը արդարացնի նպատակը։

Գերմանիային այժմ ձեռնտու չէ ընդունել, որ միջազգային օրէնք ասելով պէտք է հասկանալ այն համամարդկային իրաւագիտական հասկացողութիւնը, որով որոշւում են պետութիւնների փոխադարձ յարաբերութիւնները թէ խաղաղութեան և թէ պատերազմի ժամանակ։ Այդ իրաւագիտական հասկացողութիւնը ձևակերպւում է որոշ նորմաներով (կանոններով), ինչպէս ամեն մի միջազգային օրէնք, գործադրուելու համար։

Այժմ Գերմանիային ձեռնտու չէ հաշտուել այդ գաղափարի հետ այն պարզ պատճառով, որ նա արդէն ոտնակոխ է արել ամեն մի միջազգային օրէնք, թէև այդ օրէնքի մասին ամենաշատ և ամենամեծ հատորներ գրել են գերմանացի գիտնականները։

Այդ գիտնական ոյժերն էլ այժմ իրենց հնարագիտութիւնը ու տաղանդը արտայայտում են նորանոր մարդասպան միջոցներ ստեղծելու և հնարելու։

Չարագուշակ նոր երևոյթները ցոյց են տալիս, որ պատերազմական հորիզոնում խտանում են սև ամպեր։

Շատ ժամանակ չէ անցել այն օրուանից, երբ Վիլհելմ «կայզրը» յայտարարեց համայն աշխարհին, որ նա և իւր դաշնակիցները ցանկանում են վերջ տալ մարդկային արիւնհեղութեան և հաշտութեան դաշն կապել, աւելացնելով, որ եթէ հակառակորդները չը համաձայնեն, այն ժամանակ ամբողջ պատասխանատուութիւնը նոր զոհերի և տառապանքների վերաբերմամբ կը ծանրանայ նրանց խղճի վրայ։

Վիլհելմը սիրահար է գեղեցիկ ժեստերի։

Նա մինչև անգամ դիմեց Ամերիկայի Միացեալ Նահանգների նախագահ Վիլսոնի միջնորդութեան և իւր բանակցութիւնների ժամանակ աշխատեց, յիրաւի տպաւորութիւն գործելու համար, ցոյց տալ, որ Գերմանիան պատրաստ է ճանաչելու բոլոր ժողովուրդների ինքնորոշման իրաւունքը, որ նրա քաղաքականութեան ղեկավարող սկզբունքներն են՝ ազատութիւն ծովային եւ բաց դռներ բոլոր ժողովուրդների առեւտրի համար։

Սակայն Ռուսաստանը, Անգլիան և Ֆրանսիան, նկատելով, որ Գերմանիան, համարելով իրան յաղթող, մտադիր է յաղթողի պայմաններ թելադրել, մերժելով մերժեցին հաշտութեան առաջարկը։

Եւ ինչ անսպասելի հետևանք վերոյիշեալ գեղեցիկ սկզբունքներ քարոզողի կողմից։

Միջնորդ Վիլսոնը դեռ հարցը սպառուած չէր համարում. նա դեռ փորձում էր շարունակել իւր բանակցութիւնները, և ահա՝ յայտնի ամեն բանում տարօրինակ Վիլհելմը իւր կառավարութեան միջոցով յայտարարում է, որ Գերմանիան փակում է ծովային երթևեկութիւնը և խորտակելու է ամեն մի նաւ—լինի պատերազմական, ապրանքատար, մարդատար, և այն էլ լինի այդ թշնամի թէ չէզոք տէրութեան,—միևնոյն է։

Նպատակը հասկանալի է։ Վիլհելմը ցանկանում է նոր ճնշումով և սարսափներով արագացնել հաշտութիւնը, որովհետև ուժասպառ է եղել։

Գերմանիայի յայտարարութեան միացաւ Աւստրօ-Հունգարիան։

Այս յայտարարութիւնը մեծ շփոթութիւն և յուզմունք առաջացրեց չէզոք պետութիւնների մէջ։

Նախագահ Վիլսոնը, միջնորդը, այժմ արդէն դարձաւ հակառակորդ։

Ամերիկայի Միացեալ Նահանգների կառավարութիւնը զգալով, թէ ինչ մեծ չարիք պէտք է տեղի ունենայ և ինչ անմեղ զոհեր կարող է ունենալ Ամերիկան, որի նաւերը տարածուած են բոլոր ովկիանոսներում և ծովերում, անմիջապէս բողոքեց Գերմանիայի դէմ, յետ կանչեց իւր դեսպանին և գերմանական դեսպանին յանձնեց նրա անցագիրը, առաջարկելով հեռանալ Ամերիկայից։

Այսպէս Ամերիկայի և Գերմանիայի մէջ խզուեցին դիւանագիտական յարաբերութիւնները, որից յետոյ հետևեալ քայլը կարող է լինել պատերազմի յայտարարութիւնը։

Նոյն դիրքը, ինչպէս նկատւում է, պատրաստւում են բռնելու և մնացեալ չէզոք պետութիւնները։

Մեծ պատերազմը, ինչպէս անուանւում էր այս պատերազմը, փոխւում է համաշխարհային մեծ հրդեհի, որը

գուցէ լինի վերջին վճռական վայրկեանն այս երկարատև արիւնհեղութեան։

Սարսափների նախօրեակումն ենք գտնւում,
Բայց մեծ փոթորիկից յետոյ պարզւում է օդը։
Պատերազմը հասել է իր ճգնաժամին. Նրա վախճանը մօտենում է։

Ս. Յ.

---

## «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացել է «Համբաւաբերի» տարածման համար գիւղական դպրոցներին և գրադարաններին բաժանելու հետևեալ նուէրները.

1) Յովսէփ Խրիմ. Յովսէփեանից 100 ռ. 25 օրինակի վճար.

2) Կարապետ Աբրահամ. Խալաթեանից 40 ռ. 10 օրինակի համար.

3) Ս. Յարութիւնեանից 40 ռ. 10 օրինակի գին։

4) Ինժ. Ա. Ն. Աթաբէկեանից 8 ռ. երկու օրինակի համար։

5) Ա. Ա. Յարութիւնեանից 4 ռ. մէկ օրինակի համար.

6) Տիկին Տէր-Խաչատուրեանից 4 ռ. մէկ օրինակի վճար. Բարանա գիւղի (Ղազախ գաւառ) հայոց դպրոցի համար.

7) Գ. Ա. Իսահակեան Ատովմեանից 4 ռ. մէկ օրինակի վճար, Նոր-Բայազէդի գաւառի չքաւոր դպրոցներից մէկի համար։

8) Ալէքսանդր Աղաֆոնեան Մելիք-Աղարեանից 100 ռ. 25 օրինակի տարեգին։

9) Խորհրդիս անդամ պ. Ա. Իվ. Գօզալեանի միջնորդութեամբ Եղբ. Մ. և Տ. Խանգուլեանների Առևտր. Տունը նուիրել է «Համբաւաբերի» 26 օրինակի տարեվճարը 104 ռ. խմբագրութեանս հայեցողութեամբ ուղարկելու չքաւոր դպրոցների։

Այդ օրինակները խմբագրութիւնս ուղարկելու է գիւղական դպրոցներին և գրադարաններին, որոնց ցուցակը կը տպուի «Համբաւաբերի» միւս համարում։

Այն գիւղական դպրոցներն և գրադարանները, որոնք կը ցանկանային ստանալ «Համբաւաբերը», բայց միջոց չունին, թող բարեհաճեն վաղօրօք յայտնել իրենց ցանկութիւն և ճիշտ հասցէն, որոնց կուղարկուի նոր նուէրներից։

---

# Ներքին տեսութիւն

## ՏԳԻՏՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԹԻՒՐԻՄԱՑՈՒԹԻՒՆ

(պ. Բ. Իշխանեանի «Народности Кавказа» գրքի առթիւ)

Այդ նոր լոյս տեսած գիրքը Կովկասի ժողովուրդների մի վիճակագրական ժողովածու է, որի որոշ օգտակարութիւնը, իբրև տեղեկատու գրքի, ի հարկէ չի կարելի ժխտել։

Ես բնաւ մտադրութիւն չունեմ պ. Իշխանեանի գիրքը մանրամասն քննութեան ենթարկելու, թողնելով այդ աւելի ձեռնհասներին։ Իմ նպատակն է պարզել մի կէտ, որ ուշադիր ընթերցողի զարմանքն ասեմ թէ զայրոյթը միայն պիտի շարժի։

Արդի Կովկասի բնակիչներին պ. Իշխանեանը բաժանում է երեք խմբի. 1. Եկւորներ կամ ոչ-տեղացի ժողովուրդներ. 2. աշխարհագրական-տերրիտորիալ իմաստով *տեղական* տարրեր և 3. *բուն տեղացիներ*։ Հայերին նա դասում է երկրորդ, այսինքն տեղական, բայց ոչ բնիկ ժողովուրդների շարքը, թուրքերի, քրդերի, օսերի, պարսիկների և ուրիշ իրանական ու թիւրքական ցեղերի հետ միասին։ «Հայերի իսկական հայրենիքը, ասում է նա, պատմական մեծ Հայաստանը գտնւում է Փոքր Ասիայում, այսինքն ռուսական սահմաններից դուրս և բացի Անդրկովկասի զուտ հայկական գաւառներից (գլխաւորապէս Երևանեան նահանգի մէջ) հայերը նոյնպէս (sic) ցրուել են կովկասեան տերրիտորիայի այլ և այլ մասերում միմիայն վերջի դարերի ընթացքում» (էջ 18)*)։ Թող ների ինձ պ. Իշխանեանը, բայց թերևս նա այլ բան է ուզեցել հասկացնել—ռուսերէն լաւ չի կարողացել իւր միտքը արտայայտել։ Այլապէս դժուար է հաւատալ, որ մի հայ մարդ այնքան անգիտակ լինի, որ տարրական հասկացողութիւն իսկ չունենայ իւր հայրենիքի մասին։ «Հայերի իսկական հայրենիքը, պատմական մեծ Հայաստանը», Մեծ Հայքը, ոչ թէ գտնւում է «Փոքր Ասիայում, այսինքն ռուսական սահմաններից դուրս», ինչպէս համոզուած է պ. Իշխանեանը, այլ բաժանուած է երեք պետութիւնների՝ Ռուսաստանի, Տաճկաստանի ու Պարսկաստանի միջև և եթէ պատմական Մեծ Հայքի 7½ նահանգները մտնում են տաճկական, իսկ մէկը պարսկական կայսրութեան մէջ,—գոնէ 6½ Ռուսաստանի մասն են կազմում։ Այս տողերը գրելիս որոշ անյարմարութիւն եմ զգում. միթէ պ. Իշխանեանը չըգիտէ, որ Ալէքսանդրապոլը, Էջմիածինը, Լոռին, Երևանը, Նախիջևանը, Շուշին և այլն ոչ պակաս Հայաստան են, քան Մուշը, Կարինը, Բաղէշը և այլն և որ հայերը Կովկասում (հասկանալով Կովկասը իբրև մի տերրիտորիալ պատմական ամբողջութիւն, Անդրկովկասի հետ միասին, ինչպէս և հասկանում է պ. Իշխանեանը) նոյնքան բնիկ են որքան և Տաճկաստանում (ըստ պ. Իշխանեանի՝ „Փոքր Ասիայում“), որ հայկական բարձրավանդակը եթէ մի մասով մտնում է տաճկական պետութեան մէջ, միւսը՝ Ռուսաստանի ձեռքումն է։

Ի՞նչպէս կարելի է հայերին դասել թուրքերի ու պարսիկների հետ միասին միևնոյն խմբի մէջ, քանի որ թուրքերն ու պարսիկները եկւոր են, մինչդեռ մենք հայերս թէ Հայաստանի մէջ (Տաճկական թէ Ռուսական) բնիկ ենք, „աւտոխտոն“, թէև ոչ զուտարիւն։

„Кромѣ нѣсколькихъ чисто армянскихъ провинцій въ Закавказьѣ (главнымъ образомъ въ Эриванской губерніи), ասում է պ. Իշխանեանը, армяне *также* (ընդգծումներն իմն են) разсѣялись въ разныхъ частяхъ кавказской территоріи лишь въ теченіе послѣдующихъ вѣковъ»։ Ահա և մի նոր յայտնութիւն. ուրեմն մենք *ցրուել ենք* զուտ հայկական «գաւառներում» („զուտ հայկական տեղում“ պ. Իշխանեանը հասկանում է ոչ թէ պատմական տեսակէտից, այլ ազգաբնակչութեան թուի համեմատ) այն էլ միայն վերջի դարերի ընթացքում։ Հայերն եկւոր, հայերը ցրուած. այս մի վտանգաւոր առասպել է, մի վնասակար լեգենդա, որ ստեղծուել է հայ ժողովրդի թշնամիների կողմից և որ այնքան անզգոյշ կերպով ու թեթև սրտով, նոյնիսկ կարծէք որոշ գոհութեամբ կրկնում են մի քանի հայ հեղինակներ։

Թող պ. Իշխանեանը համոզուած մնայ, որ Հայաստանը Ռուսաստանից դուրս է և որ հայերը Երևանում, Էջմիածնում, Մասիսի ստորոտներում պիտի եկւոր համարուեն, որ մենք «разсѣяны по всѣмъ частямъ Кавказа» (էջ 25)։ Թող պ. Իշխանեանը, քանի որ ցանկանում է, հաւատացած լինի, որ մենք Կովկասեան Հայաստանի մէջ եկւոր ենք, թող պատմութեան փաստերը նրա համար համոզիչ ու պարտադիր չըլինեն, բայց որ վիճակագրական աշխատասիրութիւն է գրել, նօ պիտի իմա-

*) «Дѣйствительная родина армянъ, въ древне-историческомъ смыслѣ великая Арменія, находится въ Малой Азіи, т. е. внѣ предѣловъ Россіи, и, кромѣ нѣсколькихъ чисто армянскихъ провинцій въ Закавказьѣ (главнымъ образомъ въ Эриванской губерніи), армяне также разсѣялись въ разныхъ частяхъ кавказской территоріи лишь въ теченіе послѣдующихъ вѣковъ. Однако, дѣйствительнымъ центромъ россійскихъ армянъ является именно Кавказъ, гдѣ живетъ не менѣе 95,31% всѣхъ армянъ, находящихся въ Россіи».

նայ, որ այդ «ցրուած» ազգը հիմա էլ մի տերրիտորիա ունի, որի ազգաբնակութեան մեծ մասը ինքն է կազմում. Եթէ բարեորի ազգաբնակութեան մեծ մասը ինքն է կազմում. Եթէ բարեհաճի քարտէզը նայելու կրտսենի, որ հայերի գրեթէ ամեն նահանգում փոքրամասնութիւն կազմելը՝ որի պատճառով գուցէ այնքան տարածուել է «ցրուածութեան»*) առասպելը՝ բղխում է ոչ թէ իրական փաստերից, այլ վարչական անյաջող բաժանումից. Մենք ոչ թէ ցրուած ենք «Կովկասի ամեն նահանգի մէջ» (խօսքս լայն մասսաների մասին է), այլ մեր տերրիտորիան բաժան-բաժան է եղած քարտէզի վրայ ու միացած այլ և այլ նահանգներին. Մի հեղինակ, որ ցանկանում է օտարներին տալ Կովկասի ժողովուրդների վիճակագրական ու սոցիալական ամբողջական պատկերը, պիտի գոնէ անցողակի կերպով յիշատակէր այդ փաստի մասին:

Իշխ. Միք. Թ.

---

## ԵՐԶՆԿԱՅԻ ՎԻՃԱԿԸ

*(Երզնկայի Միութեան կողմից զեկուցում Հ. Կ. Կոմիտէին)*

Երզնկայի և դաշտի մէջ գտնուող 31 հայաբնակ գիւղերի մօտ 15,000 բնակչութիւնից, այժմ Դէրսիմի միջոցով կամ պահուելով ազատուել են՝ 100-150 քաղաքացի և 500-600 գիւղացի հայեր. Ազատուողները գլխաւորաբար Ագրակ և Սեվլիջէ գիւղերից են. Այս գիւղերը գտնւում են Դէրսիմին մօտիկ, իսկ միւս 29 գիւղերից կարծես նմուշի համար ազատուած են հազիւ մէկ մէկ հոգի.

Ազատուած հայերը գտնւում են խղճուկ վիճակի մէջ, մերկ են և սննդական անհրաժեշտ միջոցներից զուրկ. Ազատուածներից մի մասը այժմ տեղափոխուած է Կարին:

Հայերը Երզնկայում 1500 տուն էին հաշւում, որոնք այժմ բոլորն էլ քարուքանդ ու հողին հաւասար եղած են. Հայերի այն ազգապատկան ու անհատական շէնքերը, որոնք տակաւին քանդուած չեն, գրաւուած են թուրք բնակիչների կողմից և յատկացուած են իրենց ժողովրդի պէտքերին. Այժմ էլ Թուրքերը արձակ համարձակ քանդում ու վառելափայտ տանում են հայերի տներից և ոչ ոք հարցնող կամ արգելող չկայ:

Հայերի շէնքերը օր ցերեկով քարուքանդ են լինում ռուս զինուորների և Թիւրքերի կողմից, մինչդեռ զարմանալի է տեսնել, որ նոյն զինուորները Թիւրքական քցուած շէնքերին ոչ միայն ձեռք չեն տալիս, այլս պահպանում են.

Երզնկան ունի հետեւեալ ազգապատկան հաստատութիւնները. Եկեղեցիներ՝ Ս. Փրկիչ, Ս. Նշան, Ս. Երրորդութիւն, Ս. Սարգիս. Վարժարաններ՝ Ընկերական, Եզնիկեան, Կենտրոնական, Արամեան և Քրիստինեան աղջկանց միակ դպրոցը, իր կողքին ունենալով համանուն մանկապարտէզը Ֆրէօբէլեան վերջին կատարելագործուած մեթոդներով.

Տներ եւ խանութներ, ի բաց առեալ շուկայի այլ և այլ մասերում գտնուած խանութներից՝ վերոյիշեալ եկեղեցիներից Ս. Նշանը և Ս. Երրորդութիւնը իրենց շրջապատում ունեն՝ առաջինը վեց մեծ տուն, իսկ երկրորդը 22—25 շինութիւն, որոնց տարեկան վարձը կապահովէր թէ եկեղեցու և թէ յարակից դպրոցների տարեկան ծախսերի մեծագոյն մասը.

Հայերի տեղահանութիւնից անմիջապէս յետոյ, Ս. Փրկիչ եկեղեցին և Ս. Աստուածածին մատուռը Թուրքերի կողմից ուժանակներով քանդուած է, Ս. Նշան, Ս. Երրորդութիւն և Ս. Սարգիս եկեղեցիները թալանուած:

Դպրոցները կը մնան քիչ թէ շատ անվնաս, բայց զուրկ անվնաս մնացել աթոռներից և պատուհանների ապակեփեղկերից. անվնաս մնացածները յատկացուած են գաղթականների և նրանց հոգացող մարմինների բնակութեան:

Երզնկայում կայ Ազգային գերեզմանատուն և բաղնիք. Հայոց թաղի կենտրոնում և եկեղեցիների մօտիկ շինուած է Ազգային Առաջնորդարանի գեղեցիկ շէնքը, որը թէև անաղարտ մնացած է, բայց ամբողջովին կողոպտուած է:

Երզնկան ունի հետեւեալ վանքերը. Ս. Կիրակոս, Ս. Ներսէս Հայրապետ, Ս. Գէորգ, Ս. Լուսաւորիչ, Ս. Նիկողայոս, Ս. Թորոս և այլն.

Եկեղեաց դաշտը շրջապատող գեղեցիկ լեռների լանջերին շինուած այս պատմական և հոյակապ վանքերը, որոնցից իւրաքանչիւրը հայի դարաւոր գոյութեան գեղեցիկ յուշարձաններ են, ենթարկուած են թուրքական բարբարոսութեան ու վանդալականութեան: Զարչարանաց Լուսաւորիչ վանքն է, որ կիսաւեր վիճակի մէջ է գտնւում այժմ, ուր բնակւում է մի քիւրդ ընտանիք. Այս այն ընտանիքն է, որ հակառակ հայ ժողովրդի բողոքների դանդատներին, տիրող անիշխանութիւնից օգտուելով մաթիւ գանգատներին, տիրող անիշխանութիւնից օգտուելով տեղաւորուել էր վանքապատկան կալուածների մի մասում. Այժմ նոյն քիւրդ ընտանիքը ձեռք է ձգել վանքի բոլոր կալուածները և ապրում է վանքում առանց ոևէ արդարացուցիչ փաստաթղթերի:

Վերոյիշեալ բոլոր վանքերը ունեին հարկ եղած վաւերաթղթերը, որոնք հաստատում են նրանց հայ ժողովրդին պատկանելը. Բոլոր վանքերն էլ հեռաւոր ու մօտաւոր վայրերում ունեին ընդարձակ կալուածներ և վարելահողեր:

---

## ԴՐՈՒԹԻՒՆԸ ՎԱՆՈՒՄ

*(Սեպտեմբեր—Նոյեմբեր 1916 ամ.)*

*Քաղուածք Կ. Հ. Բ. Ընկ.—թեան Լիազօր Դր. Օհանջանեանի զեկուցումից*

### ՊԱՐԵՆԱՒՈՐՈՒՄ

Այս տարուայ յուլիսեան նահանջից յետոյ Վանը ամայի էր. Սեպտեմբերի կիսից քաղաքն սկսեց կենդանանալ. Եկան և կազմակերպութիւնները, մնացին միայն Քաղաքների Միութիւնը և Կ. Հ. Բ. Ընկ.—թիւնը:

Քաղ.-ի Միութեան կողմից, մինչև վերջին նահանջը՝ կարգէ է բերուած Միութեան շէնքերն ու գրասենեակը և քաղաքում բացել է երկու սննդատու կայան, որոնց մթերքները գլխաւորապէս Բարեգործականն է մատակարարում:

Գաղթականական գործի ամենապատասխանատու մասը ծանրանում է Բարեգործականի վրայ, որ ստանձնել է արդէն 18 հազար բնակչութեան պարենաւորումը՝ կրթական գործը, հագուստ մատակարարելը և այլ հոգսեր:

Բացուած են մթերանոցներ և խանութներ՝ Վանում և Ալիւր գիւղում. Ընկերութիւնը սահմել է ցորենի և ալիւրի փոխանակութիւն, որով Կովկասում ապրող Վասպուրականցիները Վանի իրենց ցորենները տալիս են Ընկերութեան պահեստին և փոխարէնը Կովկասի պահեստից ստանում:

Ծողովելով շրջանի աւելորդ ցորենը, Ընկերութիւնը զրկեց վաճառականներին ցորենի շահագործման հնարաւորութիւնից, որով այժմ պահեստի գներն են իշխում շուկայում. օրինակ՝ մաքուր և համով հացի ֆունտը 10 կ.. Պահեստը առանձնաց-

*) Նոյնիսկ օտարները գիտեն այն, ինչ որ անգիտանում է պ. Շիտանեանը, և ահա թէ ինչ է ասում Կովկասի Նախորդ Փոխարքայ կոմս Վորոնցով-Դաշկովը իր 1913 թ. ամենահպատակ զեկուցման մէջ. „4/5 армянскаго народа живетъ на своихъ исконныхъ земляхъ бывшей Арменіи, частью у насъ на Кавказѣ вокругъ Арарата, частью въ Турціи.

րել է սերմացուների տեսակները, բաժանել է գիւղացիներին աշնանացանի սերմացու և տրամադրում է նաև մի քանի հարիւր պուդ գարնանացանի համար։ Այլապէս հացի տեղափոխութեան աշխատանքը՝ ժողոված 7000 պուդ ցորենը կը նստէր Ընկերութեանը մօտ 60,000 ռ., մինչդեռ Վանի փոխադրութեան միջոցները ազատուելով աշխատանքից՝ օգնում են ուրիշ շրջանների գաղթականութեան։

Գաղթականներին մաքուր հաց մատակարարելու համար Ընկերութիւնը սարքի է քցել մի ջրաղաց՝ չնչին ծախքերով և ինքն է բանեցնում, որպէսզի ժողոված ցորենը, առանց խառնուրդի մաքուր ալիւր աղայ։

Նոյն նկատումով Ընկերութիւնը Վանում բանեցնում է երկու փուռ։

Անչափ համակրելի ձեռնարկ է նաև շաքարի և նաւթի մատակարարումը Վանում։ Տեղական գներին նայած՝ այդ մթերքների եռակի արժան վաճառումը խոր ազդեցութիւն է թողնում Վասպուրականցիների վրայ, քանի որ այդպիսով ամսական 30 հազար ռուբլու այդ մթերքների ծախքերը գաղթականների վրայ նստում է 10,000 ռ.։ Բաւական է տեսնել, թէ ինչ հրճուանք է առաջացնում բեռնած մթերքներով սայլերի գալը, որպէսզի հասկանալի դառնայ պարենաւորման գործի նշանակութիւնը և Վասպուրականցիների երախտագիտութիւնն ու սէրն առ Կ. Հ. Բ. Ը.--թիւնը։

*Սերմացանք.* Վարուցանքը շրջանում ամենակարևոր խնդիրն է։ Գարունն սկսելուց Վասպուրականում ապրելու է մինչև 60 հազար բնակիչ, որին միլիոնաւոր պուդերով հաց է պէտք մինչև բնական կեանքի վերականգնումը։ Կովկասից կարելի է ներմուծել այդ ահռելի քանակութեան միայն մի հարիւրերորդականը։ Հետևաբար, եթէ ժողովուրդը իւր կարիքի չափ սերմ չի ցանի, կամ սովամահ պէտք է լինի, կամ թէ չէ՝ վերադառնայ Կովկաս, որով աւերակ երկիրը քար ու մոխիր է դառնալու։

*Կրթութիւն.* Մի քանի հազար երեխաներ զրկուած են դպրոցից։ Հայերէն առածն ասում է. «գիւղն առանց դպրոցի, հիւսն առանց սղոցի»։ Դպրոց բանալով, քրդական յարձակումների վտանգը չի շատանալ, և աղէտի ժամանակ կարելի է փախչել ինչպէս տներից, նոյնպէս էլ դպրոցից։ Մինչդեռ դպրոցի հետ գիւղի մէջ կարգ ու կանոն է մտնում և համայնքը միմեանց հետ կապւում է մի ընդհանուր կապով, որ վտանգի ժամին այնքան կարևոր է, եթէ նոյն իսկ մի կողմ թողնենք այն հանգամանքը, որ այլապէս մի ամբողջ սերունդ կը մնայ տգէտ և անկիրթ։

Առայժմ բացուած են երեք դպրոց տարեկան 8000 ռուբլու նախահաշուով։

1) Վանում չորս-դասարանով, չորս ուսուցիչներով։ Ընդունուած են առայժմ 150 աշակերտ. ռուսերէն աւանդուելու է բարձր դասարաններում։

2) Ալիւր գիւղում՝ 200 աշակերտ։ Տեղ է պատրաստւում նորից 100 աշակերտի։ Ունի 4 ուսուցիչ, հրաւիրելու է հինգերորդը՝ ռուսագէտ։

3) Լեսկ գիւղում՝ 120 աշակերտ, 2 ուսուցիչ։ Ընդունելու է մինչև 150 աշակերտութիւն։ Ցանկալի էր բանալ 2 դպրոց ևս Թիմարի շրջանի Էրէրին և Խժիշկ գիւղերում, որտեղ մօտ 300 աշակերտ կայ (որոնց բացումն արդէն ընդունուած է)։

Ուսուցիչներ հրաւիրուած են բացառապէս Վանի և շրջանի երիտասարդութիւնից։

---

# ԳԱՒԱՌ

*Ղարաչինար (Գանձակ)*, 27 դեկտ.—Տեղս, ուր գաղթականութիւնը 200 անձի մօտ ստուար թիւ է կազմում, հոկտեմբերի սկզբէն արդէն բացուած է գաղթականական ուսումնարանը և դասաւանդութիւնը կանոնաւորապէս շարունակւում է։ Շրջանիս մօտակայ գիւղերի աշակերտութիւնը ևս յաճախում է այստեղ. թէպէտ մխիթարական՝ սակայն մարդ չէ կարող առանց սրտի անհուն կսկիծի նայել երեկուայ այդ խաղաղ և բարեկեցիկ շինականներու փոքրիկ խլեակներուն, որոնք կիսամերկ ու բոբիկ, մի կտոր սև չոր ու ցամաք հաց պայուսակներնուն մէջ, դողդողալով դիմում են դէպի դպրոց, քալելով կէս ժամէ աւելի ճամբայ, իրենց հոգեկան քաղցին յագուրդ տալու։ Այդ փոքրիկներու դիմագծերու վրայ իսկ կը տեսնուի հայ ցեղի յատուկ կամքի տոկունութիւնը, որ չգիտէ ընկճուիլ հուրի ու սուրի, ցուրտի ու սովի առաջ, կոխելով առաթուր ամեն խոչընդոտ։

Շրջանիս գաղթ. լիազօր պ. Արմենակ Բոբեան, որ դպրոցներու բացման օրէն իսկ շարունակ նամակներով հաղորդակցութեան մէջ էր ուսուցիչների հետ՝ (հակառակ փոխադրութեանց դժուարութեան ընդփոյթ ուղարկելով դպրոցական պիտոյքները) անցեալ շաբթու անձամբ քննութեան ելնելով՝ ժամանեց այստեղ և ամբողջ դասաւանդութեան շրջանին ներկայ գտնուելով, քննեց աշակերտները և գոհ տրամադրութեամբ մեկնեցաւ, ազդարարելով տեղւոյս և շրջանի որբ երեխաներու ուղարկումը Գանձակի որբանոց։

— Կենսամթերքները ինչպէս այլուր՝ նոյնպէս այստեղ օրէ օր թանգանում է. ցորենի պուդը 7 ռուբլով չի կարելի ճարել, պանիր 70 կոպ. ֆունտը, միսը 50 կոպ., իսկ շաքարի մասին խօսելն աւելորդ է։ Գիւղացու դրութիւնը չափազանց տագնապալից է, երբ աչքի առաջ ունենանք աշխատող ձեռքերու պակասութիւնը։ Հապա ինչ ըսել գաղթականներու, որոնք մազապուրծ ազատուած սուրի տակէն՝ սովի ճիրաններու մէջ ստիպուած են գալարուել. գոնէ նախապէս ստանում էին 6 ռուբլի ամսական նպաստ, իսկ այժմ՝ այն էլ կիսատուած. կարելի է երևակայել անոնց յուսահատ դրութիւնը։ Այս օրերս շրջանիս գաղթականներու անուանացուցակը (328 անձ) կազմուեցաւ ներքնազգեստ բաժանելու համար։

Պարենաւորման պահեստի կառավարիչ պ. Միքայէլ Օսէփեան գաղթականներու սիրոյ ու յարգանքի առարկան հանդիսացած է. հակառակ շրջանիս տիրող անապահով դրութեան, կենսամթերքներու փոխադրութեան, դպրոցներու կահաւորման պատճառով մերթ Գանձակ, մերթ Կեօրան (կայարան), մերթ գիւղեր է շտապում և հասնում ամեն կողմ։ Նրա շնորհիւն է նաև որ տեղւոյս գաղթ. դպրոցը կարողացած է ստանալ պետական վարժարանէն նոր ու կոկիկ նստարան-գրասեղաններ, որոնցով դպրոցը ստացած է իւր անուան արժանի կերպարանք։

*Միհր. Տէրտէրեան*

---

*Ախալցխա*, 22 դեկտ.—Անասելի թանգութիւնը և կենսական մթերքների հայթայթելու դժուարութիւնները, ինչպէս ամենուրեք, մեզանում էլ օրուայ զբաղման խնդիրն է դարձել։ Եղան օրեր, շաբաթներ, քաղաքումս հացի, շաքարի, նաւթի և այլ առաջնակարգ մթերքների սով էր տիրում և ազգաբնակութիւնը խիստ նեղութիւններ կրեց։ Այդ մթերքների ընդմիշտ ստացման համար կարևոր և անհրաժեշտ էր ունենալ քաղաքային մի առանձին պարենաւորման մարմին, գործունեայ անդամներով։ Թէև քաղաքային վարչութիւնը և նորակազմ «կօօպերատիւ» սպառողական ընկերութիւնը, նոյնպէս և «Помощь» սպառող. ընկ.-ը բաւականին աշխատեցին այդ ճգնաժամի (կրիզիսի) օրերին օգնութեան հասնելու ժողովրդին՝ ալիւր, հաց, շաքար, նաւթ բերել, սակայն նոցա արածը շատ քիչ էր քաղաքիս ահագին պահանջի հանդէպ։ Հարկաւոր էր լայն ու ընդարձակ կազմակերպութիւն, հարուստ դրամագլխով։ Այդ օրերին էր որ

քաղաքս եկաւ նոր գաւառապետը, ռոտմիստր Կուտիեը և զգալով մթերքների պատճառով ժողովրդեան կրած նեղութիւնները, իսկոյն ընդառաջ եկաւ այդ պահանջին և օգոստոսին մի գրութեամբ դիմեց քաղ. վարչութեան մի ընդարձակ պարենաւորման յանձնաժողով ընտրելու՝ քաղաքիս այդ անհրաժեշտ կենսական մթերքները ձեռք բերելու, պարենաւորելու համար, խոստանալով իր աջակցութիւնը։ Քաղաքային իրաւասուների ժողովը սիրով ընդառաջ եկաւ գաւառապետի այս դիմումին, որը քաղաքիս համար կենսական խնդիր էր դարձել, իսկոյն իրանցից ընտրեցին մի պարենաւորման յանձնաժողով 7 հոգուց։ Սակայն ապագայում տեսնելով որ գործը բաւականին բարդ ու ծանր է, իշխանութեան թոյլտւութեամբ, այդ պարենաւորման կազմը ընդարձակեցին, և իրանց մէջ ընդունելով քաղաքիս ձեռնհաս երիտասարդ վաճառականներից, արհեստաւորներից՝ նոցա թիւը մինչև 44 հոգու հասցրին։ Այս բոլոր ընտրուածները պարտաւոր են թէ անձնական աշխատութեամբ և թէ փոխարինաբար տուած դրամով աջակցել քաղաքիս պարենաւորման գործին, իսկ փոխարէնը նոքա (մեծամասնութիւն) իբր երկրապահներ (ռատնիկներ) և զինուորակոչութեան հետզհետէ ենթարկուողներ, ստանալու էին յետաձգումներ (отсрочки)։ Ահա այսպէս ընդարձակ կազմով ընտրուած պարենաւորման կոմիտէն սկսեց իւր գործունէութիւնը քաղ. պ. աւագի նախագահութեամբ, որ մինչև այսօր էլ շարունակում է, որոնց իւր միջամտութեամբ աջակցում է պ. գաւառապետը։ Եւ պէտք է խոստովանել, նոքա գործում են յաջողութեամբ. նրանց շնորհիւ մեզանում ստացուեց ալիւրի, շաքարի, վառելափայտի, նաւթի զգալի պաշար, որով և քաղաքս որոշ չափով ազատուեց մշտապէս սպառնացող սովի վտանգից։

Թ.

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ

—Կ. Հ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ըստացել է Տ. Գերասիմեան Վարդանեանից յօգուտ որբերի 100 ռ.։

—Գ. Յ. Յարութիւնեան Բասենցեանից մշտական անդամութեան համար 100 ռ.։

—Բժիշկ Մզարէուլեանից յօգուտ ճաշարանի 20 ռ.։

—Ցխինվալից Յովհաննէս քահ. Աւետիսեանից յօգուտ չքաւորների 14 ռ.։

—Ցխինվալից Ս. քահ. Տէր-Ղազարեանի միջոցով ժողոված յօգուտ «մի հայ մի ոսկի» հիմնադրամի ֆոնդի օգտին 340 ռ.։

—

Կ. Հ. Բ. Ընկ. առաջիկայ փետրուարի 10-ին, Վարդանանց տօնի օրը, յօգուտ աշակերտական ճաշարանի կազմակերպելու է մի օրեայ ժողովարարութիւն տուփերով, որի մասին խնդրած է թոյլտւութիւն պատշաճաւոր իշխանութիւնից։

—

Խորհուրդը որոշել է յատկացնել Մեղրու ճիւղին պահեստի ընտանիքների որդոց տասն աշակերտի թոշակավարձ 80 ռ., այլ և պահանջել հաշիւ բոլոր ճիւղերից, որոնց յատկացրած է պահեստի գումարներից դրամներ։

—

### ԳՐԱԴԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆ

Մայրապետ կոյս Հռիփսիմէ Թայիրեանից ստացուած է Ընկ. գրադարանի օգտին հայերէն գրքեր, որոնց թւում Հ. Առաքելեանի հանրագիտական բառարանը։

### ՀԱՅ ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Հ. Կ. Կոմիտէի կից գործող Գաղթ. Նպաստաբաշխ Մասնաժողովի միջոցով՝ 1917 թուի յունուարի 16—21-ը, 148 կոյր, հիւանդ և անկեալ գաղթականներին տրուած է 200 ռ. 60 կ. նպաստադրամ։

—

Եկատերինոդարի Հայ Կանանց Կոմիտէից ստացուած է 12 կապոց շորեր բայբուրդցիներին, որը ուղարկուեց Կարին՝ հասցնելու ըստ պատկանելոյն։

—

26 յունուարի կայացաւ Հ. Կ. Կ.-ի նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, որ զեկուց.

1) Ստացուած է Գրոզնու ճիւղից 1000 ռ. յօգուտ Կարնի գաղթականութեան, որը և ուղարկուեց Ջաւէն վարդապետին ի գործադրութիւն։

2) Ստացուած է յօգուտ Դիլիջանի արհեստանոցների 4000 ռ. Անգլիացի Բաքաուզից։

3) Տատեանայի Կոմիտէի նախաձեռնութեամբ ապրիլին Պետրոգրադում կայացած ցուցահանդէսին որոշուեց ունենալ արհեստանոցների արտադրութիւններից նմուշներ—մի ալբոմ Կոմիտէիս որբանոցների, դպրոցների, արհեստանոցների, բանջարանոցների և այլ գաղթականութեան վերաբերեալ նկարներով և Կոմիտէի ամբողջ գործունէութեան տեղեկագիրը՝ քարտէզով։

4) Երզնկացիների Միութեան Նախագահ պ. Ս. Խանջեանը համառօտակի նկարագրեց Երզնկայի անցեալը ու ներկան ի լըրումն Միութեան ներկայացրած տեղեկագրի և խնդրեց Կոմիտէիս աջակցութիւնը, որի համար ընտրուեց մի յանձնաժողով։

5) Գաղթ. դպ. Յանձնաժողովի Նախագահ պ. Իս. Յարութիւնեանը զեկուց, որ մինչև յունուարի 1-ը 1917 թ. բացուած են 135 գաղթ. դպ. զանազան վայրերում 230 բաժանմունքով 10,487 աշ. 243 դասատ. ծախս է եղել ցարդ 59,460 ռ. 15 կ., որի համար ստացուած է Մխիթար եպ. միջոցաւ միայն 38,932 ռ., որով բաց է մնում (դեֆիցիտ) 21,528 ռ. 15 կ.

6) Շնորհակալութեամբ ստացուած է հանգուցեալ Արգար Անանեանի կնոջից՝ տիկ. Սրբուհուց 3,000 ռ., իսկ եղբ. պ. Միհրանից 1000 ռ. յօգուտ գաղթականների։

—

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Դեկտեմբերի 23-ից մինչև յունուարի 24-ը Թիֆլիսից՝

Ալիւր ուղարկուած է Երևան 13 վագոն, Ղարս՝ 7, Ղարաքիլիսա՝ 3, Իգդիր՝ 6, Վաղարշապատ՝ 4, Ալէքսանդրապոլ՝ 9, Ղամարլու՝ 3, Սարիղամիշ՝ 6, Գանձակ՝ 3, Ղարաչինար՝ 1, Աննէնֆօ՝ 1, Սանդար՝ 2, Կալագերան՝ 2, Աղստաֆա՝ 4։

Բացի այդ Հիւսիսային Կովկասից Ընկերութեանս լիազօր Մովսիսեանցը ալիւր ուղարկել է Թիֆլիս՝ 11 վագոն, Սարիղամիշ՝ 7, Ղարաքիլիսա՝ 9, Ալէքսանդրապոլ՝ 10, Վաղարշապատի և Իգդիրի համար՝ 8, Երևան՝ 12, Ջուլֆա՝ 3։

Նոյն տեղից եգիպտացորեն ուղարկուած է էջմիածին կայարանը՝ 2 վ., Թիֆլիս՝ 1, Ղարաքիլիսա՝ 4, Ալէքսանդրապոլ՝ 7, Երևան՝ 3, Գանձակ՝ 2 և Ղամարլու՝ 1։

Թիֆլիս շաքարաւազ ուղարկուած է Երևան 1 վ. և Գանձակ 92 պ.։

Սապոն ուղարկուած է Երևան 15 արկղ, Ղամարլու՝ 15, Ներքին-Ախտա, Ելենովկա, Նոր-Բայազէդ, Ղարանլուղ, Դիլիջան և Քարվանսարա 10-ական արկղ։

Աղ ուղարկուած է Երևան և Ղարաքիլիսա 1-ական վագոն։

Նաւթ ուղարկուած է Իգդիր 290 պ., Վաղարշապատ՝ 196, Ղարաքիլիսա 406 պ. և Երևան 403 պ.։

Բրինձ ուղարկուած է Գանձակ 1 վ., Ղարս 1, Իգդիր 1 և

Ալէքսանդրապոլ 1, ընդամէնը 4 վ.։

Նոր գնումներ արուած են Բագւում 10 վագոն աղ և Նոր-Սենակում 1 վ. լոբի, իսկ Հիւսիսային Կովկասում 2 վ. սապոն, 39 վ. ցորեն։

Մինչև այժմ Ընկերութիւնս բացել է պահեստներ հետևեալ վայրերում՝ Երևանում, Ալէքսանդրապոլում, Ղարաքիլիսայում, Վաղարշապատում, Իգդիրում, Ղամարլուում, Նոր-Բայազիդում, Ղարանլուղում, Ելենովկայում, Ախտայում, Ղարսում, Սարիղամիշում, Բաշ-գիւղում (Բասենի շրջ.), Դանձակում, Աղստաֆայում, Դիլիջանում, Աննենոյում, Ղարաչինարում, Վանում, Ղարաքիլիսայում (Ալաշկերտի), Դիադինում, Ալիւրում, Բայազիդում, Կարինում և Խնուսում։

Ուղարկուած են Ընկերութեանս լիազորներ բանալու պահեստներ հետևեալ վայրերում.— Աշտարակում, Ղուրդուղուլի գիւղում, Գոմաձորում (Բասենի շրջան), Արդահանում և Էյլար գիւղում (Երևանի գաւառ)։

## Քրոնիկոն

Գաղթականական կազմակերպութիւնների համագումարը նախատեսնուած էր փետրուարի 6—8 Երևանում։ Պաշտօնական թոյլտւութեան ուշ ստանալու պատճառով համագումարը կայանալու է փետրուարի երկրորդ կիսին։

—

Նորերս Բագւում վախճանուած յայտնի դրամատէր Արշակ Յովսէփեան Ղուկասեանի մասին հեռախօսով մեզ հաղորդում են, որ Բագուի նոտարներից մէկի մօտ երևացել է հանգուցեալի կտակը, որով իւր 8 միլիոնից աւելի կարողութեան 4/5-ը յատկացրել է ազգային հաստատութեանց։ Մի կտակ ևս թողել է հանգուցեալը իւր սեղանի արկղում, որի գաղտնի բանալին յանձնել է իւր ազգական մի տիկնոջ, որը սակայն մոռացել է բանալու գաղտնիքը։ Յայտնի չէ, թէ ո՛ր կտակն է վերջինը. բայց մերձաւորները հաստատում են, որ խոշոր գումարներ է թողել ազգին։ Բագւումն է այժմ հանգուցեալի եղբայր Յակովբ Ղուկասեանը, որ սպասում է իւր Պօղոս և Աբրահամ եղբայրների կտակը միասին բանալու համար։

—

Մոսկուայի Հայկական Կոմիտէն որոշել է անմիջապէս շքեղ հրատարակութեամբ լոյս ընծայել ռուսերէն թարգմանութեամբ անգլիական պաշտօնական «Կապոյտ գիրքը»։

—

Յունուարի 19-ին Տ. Նազարեանի Գրական-Գեղարւեստական սալոնում կայացաւ 36 հայ բժիշկների ժողով, որտեղ որոշուեց հայ բժշ. ընկ. բանալ իբրև մաս Կ. Հ. Բ. Ընկ.-թեան։ Ընկերութեան նպատակն է լինելու՝ ծառայել հայ հասարակութեան առողջապահական և բուժական կարիքներին։

—

Հայ Երաժշտական Ընկ.-ը մտադիր է առաջիկայ աշնանից Թիֆլիսում բանալ երաժշտական դպրոց։

—

Հայ Գրողների Ընկերութեան հրաւէրով՝ բանաստեղծ Վալերի Բրիւսովը շուտով Բագուից կը գայ Թիֆլիս երեք դասախօսութիւն կարդալու Պուշկինի, բելգիացի բանաստեղծ Էմիլ Վերհարնի և Արևելքի կուլտուրայի մասին։

—

Լևոն Մանթաշեանը Հայ Գիւղատնտեսական Ընկերութեանը նուիրել է 600,000 ռ. հայ ժողովրդի գիւղատնտեսական-կրթական կարիքների համար և 30 էլ յովատակ (այղր) ձի, ձիաբուծութիւնը ազնուացնելու մեր երկրում։

Կայսեր. Կովկ. Գիւղատնտեսական Ը.-թիւնը Հայոց Գիւղատնտեսական ու Տնայնագործական Ը.-թեան հետ միասին Թիֆլիսում, առաջիկայ փետրուարի 7-ից մինչև մարտի 10-ը, կազմակերպում է կաթնատնտեսական և անասնապահական դասընթացներ։ Դասընթացներին Խ. Դիլանեանը տալու է ունկնդիրներին գործնական և տեսական ցուցմունքներ։

## Արտաքին տեսութիւն

### ԱՄԵՐԻԿԱՆ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Պատերազմող ուժերի ներկայ յարաբերութիւնը անել դրութիւն է ստեղծել։ Չկայ մի նոր ծանրութիւն, որ այս կամ այն կողմը թեքէ կշեռքի նժարը։ Սակայն պատերազմի յարատևութիւնը ինքնին անտանելի է դառնում երկուստեք ամեն կողմից։ Նոյն իսկ ամենավարդագոյն հեռանկարներն անգամ, որ խիստ կասկածելի են, անզօր են համարւում բուժելու գէթ մասամբ պատերազմի հասցրած վէրքը։

Ահա այս ծանր պայմաններում՝ Գերմանիան իր վերջին յաղթական քայլից յետոյ՝ մի շատ կասկածելի հաշտութեան առաջարկ արաւ, որ մերժուեց դաշնակիցների կողմից։ Այնուհետև վրայ հասաւ Ամերիկայի հաշտութեան առաջարկը խաղաղասիրական յայտարարութիւնը իր ծերակոյտում (սենատում)։ Նախ. 1916 թ. դեկտ. 6-ի յայտագրով Վիլսոնը առաջարկում է կռւող կողմերին յայտնել իրենց պահանջները երկու կողմերի համար էլ բաւարար կերպով լուծելու ստեղծուած ողբերգական հակամարտութիւնը առանց ոևէ մէկի վրայ պատերազմի գլխաւոր մեղքը բարդելու։ Կենտրոնական պետութիւնները պատասխանեցին, որ իրենք արդէն հաշտուելու տրամադրութիւն ցոյց են տուել՝ այժմ հերթը դաշնակիցներինն է. իսկ իրենք իրենց պայմանները կը յայտնեն միայն բանակցութիւններն սկսելիս։ Իսկ դաշնակիցները 1916 թ. դեկտ. 30-ի իրենց պատասխանի մէջ նախ սիրով ողջունում են Ամերիկայի հաշտարար քայլը—կազմելու ժողովուրդների միութիւն յանուն մարդկային և քաղաքակրթութեան, բայց բողոքում են, որ Ամերիկան միատեսակ է վերաբերւում դէպի կռւող կողմերը և չէ շեշտում Գերմանիայի և զինակիցների պատասխանատւութիւնը այս պատերազմի համար... «Սխալ է մի մակարդակի վրայ դնել կռւող կողմերին թէ անցեալի և թէ ապագայի համար»։

Ապա դաշնակիցների պատասխանը որոշակի պարզում է իրենց պահանջները. Ա.—Վերականգնել Բելգիան. Սերբիան և Չեռնոգորիան՝ այս երկների կրած վնասների արդարացի հատուցումով, վերականգնել սահմանները՝ վերադարձնելով բոլոր գրաւած հողերը։ Բ.—Ազատագրել բոլոր մանր ազգերին, մասնաւորապէս և լեհերին «օտար լծից» և Թիւրքական արիւնարբու լծի տակ գտնուող ազգութիւններին, հեռացնելով ընդմիշտ Եւրոպայից՝ քաղաքակրթութեան միանգամայն խորթ Օսմանեան պետութեանը»։ Գ.—Խորտակել խաղաղութեան մշտական սպառնալիք պրուսական միլիտարիզմը, ապահովել բոլոր՝ մեծ և փոքր ազգերի տնտեսական-հասարակական անարգել զարգացումը և «խաղաղութիւնը՝ ազատութեան, արդարութեան և միջազգային պարտաւորութիւնների անխախտելի հաւատարմութեան սկզբունքների վրայ»։

Ինչ էլ որ լինի, այս մի նշանակալից և ուշագրաւ յայտարարութիւն էր գլխաւորապէս իւր երկրորդ կէտով՝ մանր ազգերի ազատագրութեան ինքնորոշման սկզբունքներով։

Ամերիկան այս անգամ մի անուղղակի պատասխան տուեց իր ծերակոյտում կատարած մի նոր յայտարարութեամբ խաղաղութեան մասին։ Վիլսոնը հաշտութեաննախապայման ընդու-

նում է այն, որ այս պատերազմից ոչ ոք պարտուած չպէտք է դուրս գայ, որպէս զի թունոտ փոխվրէժի և նոր պատերազմի առիթ չլինի։ Այս բարի և բարեպաշտ ցանկութիւններից յետոյ Վիլսոնը իր կողմից կրկնում և աւելի է զարգացնում դաշնակիցների դեկտ. 30-ի յայտագրի ընդհանուր մարդկային և միջազգային սկզբունքները։ Նա էլ յայտարարում է, որ. այո, համաշխարհային խաղաղութեան հիմքը պէտք է կազմեն անհատ-քաղաքացիների և ազգերի ինքնորոշման և ինքնազարգացման ազատութիւնը, պետութիւնների ռամկավարացումը և սպառազինման կրճատումը մինչև այն չափի, որ անհնարին լինի պատերազմը։ Նշանակալից է, որ այսօր գաղափարապաշտ բարոյագիտութեան (Կանտի) և միջազգային ընկերութեան համաշխարհային խաղաղութեան մարդկութեան ազատագրութեան և Միջազգային Դաշնակցութեան գաղափարները պաշտպանում են ներկայ ռազմապետական կառավարութիւնների ներկայացուցիչները։

Սակայն այդ ընդհանուր սկզբունքները ներկայ դէպքում ևս քիչ արժէք պէտք է ունենային, քան որ, ինչպէս որ իրենք էլ յայտարարեցին, Ամերիկացիներին ևս ամենից առաջ իրենց դոլլարների վիճակն էր հետաքրքրում։ Նախ՝ Ամերիկան սանձեց Գերմանիայի ստորջրեայ շահատակութիւնները, որովհետև դիպչում էր իւր շահերին, ապա նա հենց խաղաղութեան ձիթենին ձեռքին բռնած հանդէս գալով յայտարարեց պարզօրէն, որ իւր շահերն էլ են մեծապէս վտանգւում պատերազմից. և վերջապէս նա խզեց իւր դիւանագիտական յարաբերութիւնները, այսինքն միակ վճռական քայլն արաւ այս ամբողջ դիմակախաղի ընթացքում, երբ Գերմանիան իւր օրհասական պայքարի ու գալարումների մէջ յայտարարեց, թէ «հարկադրուած է հրաժարուել այն սահմանափակումից», որի մէջ դրել էր նրան Ամերիկան։

Եւ երբ Գերմանիան որոշեց դուրս գալ այդ սահմանափակումից, անողոք ու անխտիր կռիւ յայտարարելով նաև բոլոր չէզոք պետութիւնների նաւերի դէմ, համամարդկային բարձր սկզբունքներից և միջազգային իրաւունքներից ճառող Ամերիկան չկարողացաւ այլևս չէզոք մնալ։ Նա յետ կանչեց իւր դեսպաններին, վերադարձրեց գերմանական դեսպանների անցագրերը և այսու պաշտօնապէս կտրեց իւր դիւանագիտական կապերը Գերմանիայի և Աւստրօ-Հունգարիայի հետ։

Եւ այժմ պարզ չէ միւս չէզոք պետութիւնների վերաբերմունքը։ Անկասկած է սակայն, որ դրանք ևս անտարբեր մնա չեն կարող։ Ինչ շարժառիթներից և ինչ կերպ էլ որ առաջ եկած լինի Ամերիկայի այս քայլը, պարզ է, որ այդ մի ամեն կողմից ծանրակշիռ և նշանակալից իրողութիւն է, որ վճռական ազդեցութիւն կարող է ունենալ պատերազմի ընթացքի վրայ։

Վ. Խ.

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՌՈՒՄԱՆԻԱՅԻ ԵՒ ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ *)

V

Հայերը Ռումանիայում ապրել են իւրայատուկ ու տարբեր կեանք, քան Բալկանի միւս վայրերում։ Ռումին կառավարութիւնը հաշտ աչքով չէր նայում Թիւրքիայում գաղթած փախըստական հայերին. ոստիկանութիւնն էլ առանձին երկիւղ ունէր յեղափոխական տարրերից, ուստի 1896 թուի դէպքերից յետոյ յատուկ հսկողութիւն են նշանակում հայերի վրայ։ Այս է պատճառը, որ մինչդեռ Բուլղարիայում հայերը կազմակերպւում և յեղափոխական ուժեղ պրոպագանդ են մղում Թիւրքիայի դէմ, Ռումանիայում ընդհակառակը հայերը անցնում են լուռ ու մեկուսացած կեանք։

Բայց և այնպէս չնայած ռումին կառավարութեան անբարեացակամ վերաբերմունքին, հայերի գաղթը դէպի Ռումինիա ընդունում է ուժեղ հոսանք և կարճ ժամանակում այնտեղ կազմւում է հայկական մի փոքրիկ գաղութ։

Այս նոր գաղթականութիւնից առաջ ևս Ռումինիայում կային հայեր, բայց նրանք արդէն ձուլուել, ռումինացել էին, պահելով միայն հայ եկեղեցին, այն էլ միայն անունով։ Հայ նոր գաղթականութիւնը պէտք է հաշուել 1896 թուականից սկսած, որոնց հետ ազգային կապ է սկսում այն փոքրաթիւ հայութիւնը, որ կենտրոնացած է գլխաւորապէս Կոստանցայում և ռումինահպատակ, որ դարձել էր 1877 թ. պատերազմից յետոյ։ Այս փոքրաթիւ գաղթականութիւնը ևս խորթ էր մնացել հին ռումինահայութեան. նրանք են, որ հիւրընկալում են 1896 թուի փախստական հայերին և նրանց յուսով է, որ հայերը վստահանում են մտնել Ռումինիա։

Հին ռումինահայութեան մասին ես կը խօսեմ այլ պատեհ առթիւ, իսկ 1878 թուի ակնարկած հայութեան մասին ասեմ միայն, որ հայ գաղթականութեան այն տարրերի հատուածն է, որը Թիւրքիայի տիրապետութեան օրով ապրում է Դոբրուջայում, աւելի Սև-ծովի ու Դանուբի միջև ընկած դաշտավայրում։ 1878 թուի պատերազմի ժամանակ ազատագրուած այդ երկիրը անցնում է Ռումինիային և այնտեղ մնացած հայերն էլ դառնում են ռումին քաղաքացիներ։ Նրանց թիւը շատ չէ, հազիւ մի չորս հազար լինի, սակայն կարճ ժամանակուայ ընթացքում կարողանում են լաւ դիրք, ապարէգ ու հարստութիւն ձեռք բերել։

Ահա այս փոքրաթիւ հայութիւնն ընդունում է 1896 թուի փախստական հայրենակիցներին և օգնում նրանց Ռումինիայում հաստատուելու։ Նոր եկուորներն ընտելանում են երկրի սովորութեան ու օրէնքին, որոշ չափով վարժւում լեզուին, դառնում արհեստաւորներ ու վաճառականներ, սակայն մոռանում են կամ գիտակցաբար մոռացութեան են տալիս իրենց հպատակութեան կարևոր հարցը։ Զինուորական ծառայութիւնից խուսափելու համար նրանք գերադասում են մնալ թիւրքահպատակ։

Բայց ահա վրայ են հասնում ներկայ պատերազմի սարսափելի օրերը։ Ամեն երկիր իր քաղաքացիներին զէնքի է կանչում։ Հայ երիտասարդութեան մի մասը դիմում է Կովկաս կամաւորութեան, իսկ մնացածները մնում են անշարժ, կարծելով որ ազատ կը մնան զինուորակոչութիւնից։ Սակայն այդ բարի յոյսերը ի դերև են լինում, հենց որ ռումին կառավարութիւնը զինակոչութեան օրէնքներ է մշակում։ Պարզւում է, որ օտարահպատակները ազատ չեն մնում զինուորագրութիւնից, մինչև իսկ հայերի զինուորագրութեան մասնաւոր դէպքեր են պատահում։

Եւ ահա սկսւում է նոր ձևի խուճապ. մարդիկ կամենում են օր առաջ ազատել իրենց գլուխը, ապահով տեղ համարելով Ռուսաստանը։ Վերջին երկու ամիսը Բուքրէշի և միւս վայրերի հայութեան կէսը Ռուսաստան գաղթեց։ Շարունակ խմբեր էին, որ անցնում էին Ռէնի։ Գաղթի կանոնաւոր ձև էր այս, որ փոխուեց անհարեկ խուճապի, հենց որ Ռումինիան պատերազմ յայտարարեց և բուլգարները մտան Դոբրուջա։

VI

Ռումինիան պատերազմ յայտարարեց օգոստոսի 15-ին և իսկոյն և եթ մտաւ Տրանսիլվանիա, որին ի պատասխան Բուլղարիան հենց միւս օրը մտաւ Դոբրուջա և գրաւեց Թութրա-

*) Տես «Համբաւաբեր» № 3։

քանը։ Թերթերը գոռացին, որ այդ դաւաճանութիւն է, քանի որ Ռումինիան Բուլգարիային պատերազմ չի յայտարարել, սակայն այդ յուսահատութեան առաջին ճիչն էր։ Բուլգարները շարունակեցին իրենց արշաւանքը, մէկը միւսի յետեից գրաւելով Բազարջիկ, Բալչիկ, Սիլիստրա և այդ գծի վրայ գտնուած բոլոր գիւղերը, մի խօսքով ամբողջ Դոբրուջան։ Այդ այն հողաշերտն է, որ կազմում է Դանուբի ու Սև ծովի ջրի մէջ ընկած երկրի հարաւային մասը, և որը 1878 թ. պատերազմից յետոյ անցել էր Բուլգարիային։ Զուտ բուլգարական երկիր է այդ, Թիւրքիայի տիրապետութեան օրով անգամ բուլգար ազգաբնակութեամբ։ Ազգաբնակչութեան մեծ մասը թիւրքեր են, միւս մասն էլ բուլգարներ. բայց դրանց հետ միասին պէտք է հաշուել և հայերին, որ շատ հնուց եկել ու գաղթականութիւն էր հիմնել Դանուբի այդ հարաւային շերտում։ Ե՞րբ է տեղի ունեցել այդ գաղթը և ինչ քանակութեամբ — յայտնի չի։ Կարելի է ասել միայն, որ նրանք եկել են Թրակիայի վրայով, ժամանակին եղել են բուլգար ցարերի հպատակներ. ունեցել են մեծ ազդեցութիւն ու դիրք, ձեռք են բերել վաճառականական յատուկ արտօնութիւններ. մինչև որ թիւրքերի տիրապետութեան օրով կազմալուծուել ու հետզհետէ ոչնչացել են, այսինքն մի մասը թիւրքացել է, միւս մասն էլ հատուկտոր ցրուել Բալքանի զանազան մասերը։ Մնացել է շատ քիչ հայութիւն միայն, որոնք ապրել են գլխաւորապէս Սիլիստրայում ու Բազարջիկում։

Անշուշտ այդ վայրերի պեղումները երևան կը հանեն պատկառելի հնութիւններ ու յիշատակութիւններ, այժմ սակայն պէտք է բաւականանալ հայ եկեղեցիներով միայն, որ կանգնած են հին եկեղեցիների աւերակների վրայ։

Դոբրուջան 1878 թուին անցնելով ազատագրուած Բուլգարիայի ձեռքը, ստանում է բարգաւաճման նոր ընթացք և դառնում է ամենաբերրի ու ամենապտղաւէտ մի երկիր, գրգռելով հարևան Ռումինիայի ախորժակը։ Հայերը այդտեղ նոր զարկ են ստանում. վերականգնւում է նրանց ազգային դիմագիծը, որին բացարձակ հովանաւոր է հանդիսանում բուլգար նորակազմ կառավարութիւնը։ Ժամանակի ընթացքում, մանաւանդ 1896 թ. կոտորածներից յետոյ, հայերի թիւը մեծանում է նոր գաղթականութեամբ, սկսւում է նոր շարժում, նոր հոսանք, և կազմում է մի փոքրիկ «Հայաստան», ուր հայերի ընդհանուր թիւը 1912 թուին հաշւում է մօտաւորապէս 3,000 հոգի։

Հայերը վարժւում են բուլգար լեզուին, բուլգար սովորութեան, ունեն ազգային անկախ խմբակցութիւն, մի մասը իբրև այլ ևս բուլգարահպատակ, միւս մասն էլ մնալով թիւրքահպատակ, և այդ պայմաններում շատ գոհ են։ Բայց Բալկանեան վերջին պատերազմին անսպասելի կերպով յանկարծ Ռումինիան անցնում է սահմանը և առանց որև է դիմադրութեան Բուլգարիայից խլում է Դոբրուջան։

Շրջապատուած թշնամիներով, Բուլգարիան ստիպուած է լինում հաշտութիւն խնդրել իր համար շատ ստորացուցիչ պայմաններով։ Դոբրուջան անցնում է Ռումինիային և հայերի համար բնականաբար սկսւում է նոր շրջան՝ սկսած 1913 թուից — Ռումին լեզու, ռումին օրէնք ու սովորութիւն, և նոյն իսկ նոր ձևի վաճառականութիւն, որ այնքան շահաւէտ է հանդիսանում հայութեան համար։ Բուլգար կոպէկներին փոխարինում են ռումինական հազարները, բուլգարական մանր ու խեղճ վաճառականութիւնը ձևափոխւում է առևտրական հիմնարկութիւնների, սայլերի տեղ գալիս է երկաթուղի, արդիւնաբերութեան առջև բացւում է եւրոպական շուկայ, և հայերը դառնում են այդ նոր շուկայի տէրը։ Թիւրքն ու բուլգարը անկարող են հանդիսանում նրա հետ մրցելու։

Փոխւում է և ռումին կառավարութեան հայեացքն ու վերաբերմունքը դէպի հայերը. վերանում է և ռումին ոստիկանութեան նախկին խորթ յարաբերութիւնը հայերի հանդէպ։ Ակնկալւում են մեծ յոյսեր։

Սակայն նոր հպատակութեան տարին դեռ չլրացած սկըսւում է գերմանական պատերազմը. երկրորդ տարուայ ընթացքում Բուլգարիան է խառնւում պատերազմին՝ սպառնալով յետ խլել Դոբրուջան, իսկ երրորդ տարին էլ Ռումինիան է մտնում պատերազմի մէջ, առաջ բերելով այս նոր աղէտը խեղճ հայերի գլխին։

Հայերի փայլուն յոյսերը փոխւում են մռայլ յուսահատութեան։

Բուլգարիայի յաջողութիւնները աննախօրինակ էին։ Մի ամսուայ ընթացքում տիրանում է ոչ միայն իր կորցրած Դոբրուջային, այլ և մտնում է Կոստանցա ու շարունակում առաջ ընթանալ։ Ռումին կառավարութիւնը չկարողանալով կասեցնել թշնամու արշաւը, մտածում է գէթ փրկել իր հպատակներին։

Սիլիստրայի պրիմարիան առանձին հովանաւորութիւն է ցոյց տալիս հայերին։ Ոչ միայն քաղաքի, այլ և մերձաւոր գիւղերի հայերին հնարաւորութիւն է տրւում անցնելու Դանուբի ռումինական ափը, որից յետոյ հայերը գաղթում են Բրաիլա ու Գալաց։ Բազարջիկի ու նրա շրջակայ գիւղերի հայերից շատ քչերն են ազատւում, այն էլ բացառապէս տղամարդիկ։ Կոստանցայի ու շրջակայ վայրերի հայերը շատ չնչին բացառութեամբ բոլորն էլ օր առաջ կարողանում են հեռանալ կռուի վայրից։

Եւ այսպէս օգոստոսի 15-ից մինչև նոյեմբերի 12-ը Դանուբի ու Սև ծովի միջև ընկած երկրի բոլոր հայութիւնը փախըստի է մատնւում, կորցնելով ամեն հարստութիւն ու տնտեսական կարողութիւն։

Ինչպէս ասացի նրանք տեղաւորւում են Դանուբի միւս ափերին, ռուսական սահմանին մերձ։ Սակայն այս կացութիւնը ևս ժամանակաւոր է։ Թշնամին անցնում է Դանուբի ձախ ափը, տիրում մայրաքաղաք Բուքրէշին ու համարեա ամբողջ Ռումինիային։ Եւ ահա նոյեմբերի առաջի կիսին սկսւում է նոր գաղթականութիւն, այս անգամ կենտրոնական Ռումինիայից։

Փախստականների երկու հոսանքները միանում են և մեծ մասամբ անցնում Ռուսաստան, տեղաւորուելով Օդեսայում, մասամբ էլ Ռոստովում և մանր-մունր վայրերում *)։

Այսպէս է սկսում ու վերջանում Բուլգարիայի ու Ռումինիայի հայութեան — հայ գաղթականութեան վերջին հատուածի պատմութիւնը։ Պոլսից ու Հայաստանից նրանք փախչում են 1896 թուականի կոտորածների օրերին և 22 տարուայ տարագիր կեանք վարելուց յետոյ, այսօր՝ 1916 թ. կրկին անգամ փախստականի ու գաղթականի ցուպը ձեռք առնում, նոր վայր, նոր շուկայ, նոր կեանք փնտրելու։

Ի՞նչ է սպասում նրանց մօտ ապագայում — գուշակել դժուար է։

Յուսանք և սպասենք։

Յ. Ճերմակ

21 դեկտ. 1916 թ.

---

*) Յօդուածս չէի վերջացրել, երբ լուր ստացուեց, որ ռուս կառավարութիւնը կամենում է այդ հայերին քշել Պոլտաւայի նահանգը։

# Գեղարուեստ

## «ԱՐՑՈՒՆՔ,—ԲԱՐՁՈՒՆՔ» ԳՐՔԷՆ

***

Ա՛լ հատաւ իւղը յոյսիս կանթեղին...
անյոյս եմ, մայր։
Աշուն է. շուրջըս ծառեր կան դեղին...
անյոյս եմ, մայր։

Պատրանք ու ցնորք, ինչ որ կար՝ անցաւ...
յոգնած եմ, մայր։
Տիեզերքը ողջ՝ մի մութ քարանձաւ. .
ճ, քնած եմ, մայր։

Խաբող է եղեր, խաբող ամէն կին...
գերուած եմ, մայր։
Հիմա կը խղճամ մարդուն, ամենքին...
երուած եմ, մայր։

Եւ ինչու ժպտել, ինչէն գոհանալ..
բոցուած եմ, մայր։
Աստուած մ'ունէի՝ մեռաւ, ո՛հ, ա՛ն ալ...
խոցուած եմ, մայր։

ԱԶԱՏ ՎՇՏՈՒՆԻ

# Գրականութիւն

## ԼՈՒՐ

Երկինքն է պատել գորշ ու կապարէ, մռայլ ամպերով։ Փըչում է հովը օրրում մերկացած ու որբ ծառերը։ Երկրի վրայով անցաւ մահաբեր ու սուր գերանդին, և թողեց միայն մի քանի թշուառ ու մերկ ցօղուններ։ Երկիր մերկացաւ, ամայի դարձաւ...

Գալիս է դաժան ու ցուրտ ձմեռը։

Այդ ժամին միայն սթափուեց վարդը. բարձրացրեց գլուխը նա հողի տակից, միայնակ, թմբի, մերկ դաշտի վրայ։

Ծիրանի վարդը դողում էր, ցնցւում մահաշունչ ցրտից։

Եւ նա տարածեց իր երկար ու թոյլ տերևիկները իրեն քաշելու արևի պայծառ ճառագայթները։ Ի զո՜ւր, շա՜տ ի զուր. չափազանց ուշ է։

Այնտեղ հեռաւոր վայրում ամառ է։ Այնտեղ մի նոր կեանք, նոր օր է բացւում. նորանոր յոյսեր, ուրախութիւններ, զուարճութիւններ, միշտ նոր և միշտ թարմ։ Այնտե՜ղ, այլ երկրում նոր ու թարմ վարդեր... Իսկ այստե՜ղ մեռնում, ամեն ինչ կորչում, անհետանում է։

Ձմեռը դաժան, մահուան հրեշտակը գալիս է ահա։

Սառնամանիք է նրա հողմ-շունչը, և ձիւն է նրա շնչի գոլորշին...

—«Աստուած բարեգութ»,—լալիս է վարդը.—«գթա ինձ, խղճա։ Ես այնպէս մատղաշ, երիտասարդ եմ. ես այնպէս կուզեմ դեռ երկար ապրել։ Ինչու է թաղւում ինձնից արևը։ Ինչու, ասա ինձ, այսպէս վաղաժամ ոչնչացնում է սառնամանիքը և թաղում է ինձ ձիւնի պաղ շերտով։ Ինչու պիտ մեռնեմ. չէ՞ որ այս կեանքում ես դեռ չեմ ապրել։ Ինչու ես պիտի հեռանամ յաւէտ դեռ չտաքացած, չլուսաւորուած արևի դիւթիչ մի շողով, անգամ, չապրած նոյն իսկ մի երջանիկ րոպէ»։

—Լռի՜ր... սուլեց բարկացած քամին խորխատագին, և թաղեց լացող վարդը վշտաբեկ փոշու և փթած տերևի շերտով։

Նա թաղեց յաւէտ վարդը կենդանի։

Էսպէրանտոյի միջոցով Թարգմ. Ս. Համեան

## «ՃԱՂԵՐԻ ՅԵՏԵՒ» ԳՐՔԻՑ

### ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆԸ·

*Այնքան քիչ բան է հարկաւոր երբեմն երջանիկ լինելու համար։*

Եթէ ձեր սիրելին, մտերիմը, կամ պարզ ծանօթը բանտումն է՝ նրան յաճախ գրեցէք։

Ամեն մի երկտող մխիթարում է բանտարկեալի մենակութիւնը, կրճատում ժամերը, թեթևացնում կամարների ծանրութիւնը։

Բայց եթէ նրան ուզում էք իսկապէս սփոփել՝ յաճախ նուէրներ ուղարկեցէք շատ։

Մի զոյգ գուլպայ, թաշկինակ, մի փաթեթ ծխախոտ, մի կտոր շոկոլադ...

Դրսից եկած ամեն մի իր՝ լոյսի ճառագայթ է բերում իր հետ մութ զնդանը, ամեն մի չնչին առարկայ խօսում է մենաւորի հետ, ուրոյն, անպատմելի բարբառով, պատմում, որ նա կտրուած չէ աշխարհից, որ իրեն սիրում են «դրսում», իր մասին մտածում։

Նա շօշափում է այդ ողորմելի իրերը և նրան թւում է, թէ մտերիմ ձեռքեր թօթուեց. նայում է նրանց և կարծում, թէ իրեն հարազատ աչքեր ժպտացին։

Ես բանտարկուած էի մի այնպիսի քաղաքում, որտեղ ոչ ոք չունէի, որ ինձ այցելութեան գար...

Ես այնքան էի սրտնեղում, որ երբեմն մտածում էի մահն է լաւ, թէ այս խայտառակ գոյութիւնը։

Հատ-հատ ստացուող նամակները մի րոպէ ուրախացնում էին ինձ. ես կարդում էի նորից ու նորից. նրանց բովանդակութիւնն անգիր գիտէի, բայց կարդում էի նորից և հանգստանում, հաշտւում... Բայց երեկոյեան, երբ հաւաքում էին նամակները, երբ հսկիչը վերցնում էր իմ ուրախութիւնը, որ, ինչպէս օրէնք էր, տանի այրէ՝ ես ընկնում էի նոր մելամաղձոտ դրութեան մէջ։

Այդ ժամանակ թւում էր, թէ այլևս ոչինչ չկայ չորս կողմս, ինձ նետել են մի ամայի կղզի, որտեղ մարդկային ոչ մի ձայն չի հասնում, որին ոչ մի նաւ չի մօտենում։

Բայց ահա մի ձմրան օր ինձ բանտի գրասենեակը կանչեցին և յանձնեցին մի պոստային ծանրոց։

Սրտատրոփ բաց արի.—մի բաճկոն էր միջին, մի սիրուն, տաք բաճկոն և երեք զոյգ գուլպայ։

Բոլորի վրայ էլ իմ անուան սկզբնատառերն էին գրուած։ Երբ ինձ ասացին, որ կարող եմ վերցնել ու խուցս վերադառնալ՝ այդ թանգ իրերը պինդ կրծքիս սեղմեցի և վազէվազ աստիճաններով վեր բարձրացայ։

Մենարանիս դուռը հասնելիս, յիշում, եմ մեքենայօրէն յետ նայեցի. ոչ ոք չկար. ես ապահովուած ներս մտայ։ Ես ինձ այնքան երջանիկ էի զգում, այդ երջանկութիւնն այնպէս անհնարին էր թւում, որ կարծում էի, թէ ձեռքիցս խլելու են։ Ես մի քանի րոպէ մնացի երկաթէ թախտիս նստած, գանձս ձեռքերիս մէջ բռնած, ապա բարձրացրի, նայեցի։

Փռեցի մահճիս վրայ, յետ քաշուեցի, էլի նայեցի, ժպտացի թեթև և ուրախ. քայլում էի, ժպտում։

Քիչ յետոյ փորձեցի շարունակել կիսատ թողած գիրքը, բայց ընթերցանութիւնից ոչինչ դուրս չեկաւ։

Գիրքը դէն շպրտեցի, կրկին սկսեցի նայել, շօշափել իմ բաճկոնը, գուլպաներս… Առանձին քաղցրութեամբ իմ աչքերն էին գուրգուրում անուանս սկզբնատառերը: Պարզ տեսնում էի մտաւոր, մտերիմ աչքեր՝ կռացած նրանց վրայ, սիրելի մատներ՝ գործելիս…

Երկար ժամանակ չէի հագնում բաճկոնը, չէի օգտւում գուլպաներից…—ես ափսոսում էի:

Յաճախ, շատ յաճախ երբ կամարները շատ էին ճնշում ուսերս և ճաղերը ցաւեցնում էին հայեացքս՝ ես բաց էի անում, նայում, շօշափում, ուրախանում, հաշւում…

---

…Հիմա, երբ յիշում եմ այդ բոլորը, ես ցաւով ծիծաղում եմ ինձ վրայ, խղճում ինձ…

Գ. Քեալաշեան

26 նոյեմբ. 1914 թ. Մոսկուա

# Մատենախօսութիւն

## ՇԱՆԹԻ «ԿԱՅՍՐԸ» *)

Der Will zur Macht.—Իշխելու կամք ու տենչանք, ասել է Նիցշէն: Միշտ ու անվերջ դէպի վեր, կրկնել է Իբսէնը: Գուցէ քաւութեան նոխազը այստեղ ես Նիցշէն ու Իբսէնն են հանդիսանում: Եւ իսկապէս «Կայսեր» հեղինակի համար Նիցշէ-Իբսէնեան փիլիսոփայութեան ու հոգեբանութեան թիւր ըմբռնումն ճակատագրական է դարձել:

Բայց նախ շարունակենք անցնել մեր գահամոլների—մանեակների սրահով և դիտենք դրանց ամենահետաքրքրական ու տիպար ներկայացուցիչներին: Յիշեցէք «կայսրների» ներքինիների, Թէոֆանոյի, արխոնդների խօսքերը իրենց մաշող ցաւի մասին, վերյիշեցէք Իբսէնի Հերդի («Բրանդ»), Հիլդաների («Կառուցանող Սոլնէսը»), Փրաւ Մայեաների («Երբ մենք մեռելներս կարթնանանք») խօսքերը և համեմատեցէք «Կայսրի» Հաննայի հետ:—«(Օհան Գուրգէնին): Դուն տիրես պիտի գահերու, ժողովուրդներու. դուն տիրես պիտի աշխարհներու. այդ բոլորը քուկդ պիտի: Բայց դուն ինծի քու գահդ չես տանելու. այդ մէկը պէտք չէ որ ըլլայ».—Օհան Գուրգէն.—Ինչպէս… ինչու… Հաննա.—Կուզեմ արժանի ըլլամ քու այդ մեծ սիրուդ, կուզեմ ըլլամ արժանի քո հոգիիդ որոնումին, կուզեմ ըլլամ քեզի հաւասար… Կայսր քու գահիդ վրայ, ոչ, ես կուզեմ ըլլամ Կայսր քու հոգիիդ վրայ:

Խեղճ աղջիկ: Դու էլ… Որ Իբսէնի Հերդին կամ Հիլդան 19-րդ դարում Նորվեգիայում կարող էին դէպի բարձունքները տենչալ—մենակ ձիւնապատ գագաթները բարձրանալ կամենալ (Հաննա)—այդ հասկանալի է, բայց Անատոլիայի բարձունքներում միջին դարում էլ Իբսէնեան աղջիկներ են եղել՝ այդ ոչ պատմական, ոչ էլ գեղարուեստական-հոգեբանական տեսակէտից է արդարացւում: Մենք հասկանում ենք Փրաւ Մայեայի և Հիլդայի վերելքի, թռիչքի պահանջները: Մենք հասկանում ենք Բրանդին դէպի անհաս լեռնագագաթներին կանչող «ձիւնեղէն եկեղեցին» կոչող խենթ Հերդին, չենք կարողանում հասկանալ Օհան Գուրգէնին դէպի «ճերմակ բարձունքները, մինչև միգապատ կատարները, մինչև անհաս տենչանքները» հրաւիրող Հաննային:

Բայց հարցը կանչելը, դէպի վեր անվերջ «մագլցելը» չէ. էականը նպատակն է, ձգտման հոգեբանական արդարացումը: Ինչպէ՞ս, ինչի՞ և ինչո՞ւ համար է ձգտում Օհան Գուրգէնը, նրա հետ և բոլոր մեծ ու փոքր «Կայսրները»: Մերկացնել այդ ցաւագար տենչանքի հոգեբանական հիմքերը՝ նշանակում է հասկանալ ոչ միայն Օ. Գուրգէնին, որ գագաթնակէտն է այդ փոխադարձ յափշտակման ու ստրկացման վերելքի, այլ հասկանալ «Կայսրի» բոլոր կայսրներին ու կայսրիկներին և դրանով հենց դրամայի «իմաստը»:

Այս դրամայի միակ դրական, թէև ոչ իրական տիպը Հաննան է: Իսկ բացասականների գլխաւոր տիպարն ու աննպատակ, անմիտ վերսլացման մարմնացումը Օհան Գուրգէնն է: Սա լրացնում և իր կատարեալ անհեթեթութեանն է հասցնում բոլոր «գործող անձերի» գահամոլութիւնն ու «կայսրութեան» տենչանքը:

Ահա այդ գլխաւոր անձի ողջ հոգեբանութիւնն ու էութիւնը.—Մարդիկը իրար կապողը յափշտակութիւնն է. եթէ մարդիկ սիրտ ունին… ամեն փառք ու գործ ստեղծուած է միայն օրուան մը համար… Գրաւիչ են միայն այն խաղերը, որոնց վրայ մարդ իր կեանքն ու մահը կը դնէ… Ըսէ, խնդրեմ, ի՞նչ հրապոյր, ինչ իմաստ կմնայ կեանքին մէջ, եթէ հանես կեանքին մէջէն կեանքին, բաղդին ու աշխարհին հետ խաղալը: Ըսէ, տեսնեմ, ապրած-տեսած մարդ ես դուն, ինչ կը մնայ տակը… Կուլայ (Հաննան), որ մարդիկ կը մոռնան իրար ու կը խլեն իրար ձեռքէ իրարու ինչքը, հողն ու սարքը, ճակտին քրտինքը, բաղդն ու կնիկը… Լաւ չէ: Հասկցուր իրեն, որ մարդիկ եթէ ատիկա չընեն, ուրիշ ի՞նչ կը մնայ իրենց ընելու»:

Ահա և Շանթի գլխաւոր հերոսը—կայսրութեան մարմնացումը իր հոգու ողջ մերկութեամբ ձեր առաջ: Ի՞նչ մարդ է այդ, ի՞նչ է ուզում նա և ինչի՞ է ձգտում: Ի՞նչն է թանգ նրա համար կեանքում. յափշտակութիւնը… յափշտակութեան համար: Կեանքի, բաղդի, աշխարհի ու մանաւանդ մարդկանց կեանքի հետ խաղալը, հենց այնպէս՝ սեփական «հաճոյքի և քմահաճոյքի» համար: Այդպէս կեանքը, բացարձակ անիմաստ և աննպատակ կը լինի, եթէ միայն, ի հարկէ, այդպիսի լոկ կենդանական կեանքը «մարդկային» իմաստ ու նպատակ ունի: Եւ այդպիսի մարդը բնականաբար պատրաստ է ոտի տակ տալու ամեն մի սուրբ բան—ոչ միայն Թէոֆանոյի, այլ և Հաննայի սէրը, արհամարհելու ամեն մի իրաւունք, բացի բռունցքի իրաւունքից, և առանց այլ և այլի խորտակելու ամեն մի կապ, երբ նա հասնում է իր նպատակին—գահին, իշխանութեան.—«Անելի է լինէ ամեն կապ, ամեն շղթայ»: Եւ ինչպէս կարող է այդպէս չլինել, քանի որ նրա խորը համոզումով, ապրած ու պայքարած մարդու համար «իմաստութեան վերջին խօսքն» է—der weis heit letzter Schluss'—«մարդիկը իրար հետ կապողը յափշտակութիւնն է»:

Նորից յիշեցնելով, որ այս տրտառոց, եթէ ոչ անբնականոն (աննորմալ), մտայնութիւնն ու բարոյականը քննութեան առարկայ գրուածքի ողջ հերոսների սեփականութիւնն է, հարց ենք տալիս. ինչ գեղարուեստական արժէք կունենայ մի գրուածք, որի մէջ չենք ասում՝ թէ բարձր գաղափար չկայ, այլ որի մէջ բոլոր գործող անձինք անխտիր ու աննպատակ տառապում են «կայսրութեան», իշխանութեան ցաւով, առանց որևէ մարդկային-բարոյական նորմ—սահման և օրէնք ճանաչելու: Բարոյականութեան պահանջ չեմ դնում, այլ բնականութեան: Մի՞թէ բնական է այդ:

Բայց բնականութիւնից, ուրեմն և գեղարուեստականութիւնից անկախ հարցնում ենք. մի՞թէ ամեն «բնական», ուրեմն և մասամբ ամեն մի մանր «հոգեբանական» մարդկային-կենդանական մղումն կարող է նիւթ դառնալ մի խոշոր գեղարուեստական երկի, այն էլ այդ չափերով ու ծաւալով: Ճիշտ է, անհատական ուժեղ ձգտումները, բնականի ու մարդկայինի բոլոր սահմանները ոտնահարող խենթ խոյանքները նիւթ են դարձել և մնայուն գեղարուեստական գործեր ստեղծել. օր. Ֆաուստ, Մանֆրեդ,

*) Տես «Համբաւաբեր» № 3:

Բրանդ, Խորասուզուած զանգը. Homo Sapiens, Այսպէս խօսեց Զրադաշտը և այլն։ Բայց նախ՝ անհատականը այդտեղ նեղ եսական ու ժամանակաւոր «հաճոյքների ու քմահաճոյքների» մտքով չէ հասկացուել. այլ ձգտել է ընդհանուր մարդկայինին ու յաւիտենականին. և երկրորդ՝ երևան է եկել անհատի հոգեբանութեան ընդհանուր մարդկային հակասութիւններն ու բարդութիւնները։ Մինչդեռ յիշեալ գրուածքների մէջ հերոսները իրենց վերսլաց մղումներով ձգտում են անհատականից, մարմնականից, ժամանակաւորից վեր, աշխատում են դուրս գալ իրենց եսի նեղ կեղևից և ընդգրկելով հանուրն ու Միայնը՝ տևական երանութեան հասնել. «Կայսրի» հերոսները մի ապշեցուցիչ միօրինակութեամբ ուզում են իշխել մէն-մենակ, իշխել րոպէի համար, բայց դրա համար ձգտել «մինչև անհաս տենչանքները. մինչև մահուան սահմանները»։ Այդպէս չէին ձգտում նաև Ֆաուստը և Բրանդի նման Homo Sapiens-ները։ Սակայն նրանք և լոկ անհատօրէն թռչել, երջանկութեան և նպատակին հասնել չկարողացան, ուստի «իմաստութեան վերջին խօսքը» ասացին (Ֆաուստ)՝ մնալով բնականի ու մարդկայինի սահմաններում։

«Կայսրի» հերոսները անպայման և միահամուռ կերպով ձգտելով «գահի»՝ երևան են բերում մի չափազանց պարզ ու հասարակ, համարեա անբնական ու միակողմանի հոգեբանութիւն, զուրկ որևէ խորութիւնից և ընդհանուր մարդկային նշանակութիւնից, և դրանով էլ գեղարուեստական տեսակէտից արժէքազուրկ անում այս երկը։ Արտաքին՝ լեզուական ու ոճական գեղեցկութիւնները չեն կարող նրան միայն գեղարուեստական արժէք տալ։

Վ. Խորէնի

---

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

### Կորած տաճկահայ երեխաներ

Շատախցի այրի տ. Ղումրի Մելիքսեդեկանը Վանայ երկրորդ մեծ նահանջին Բերկրու մօտերքը կորցրել է իր երկու տղան՝ Մարգար 13 տարեկան և Հարազատ 12 տարեկան, իսկ Հին-Բայազիդի մօտերքը իր աղջիկ Բերկրանոյշը 8 տարեկան։

Ով սրանց մասին որևէ տեղեկութիւն ունի, բարի լինի հաղորդելու Հին-Նախիջևանի յաջորդ Միոն վարդապետին։

---

## Յայտարարութիւններ



Տպարան Ն. Աղանեանի

Типографія Н. Аганьянцъ, Полицейская 7.

Дозволено воен. ценз.